

ՎԱԼԵՆՏԻՆԱ ՎԼԱԴԻՄԻՐՈՎՆԱ
ՏԵՐԵՇԿՈՎԱ



ՎԱԼԵՐԻ ՖՅՈԴՈՐՈՎԻՉ ԲԻԿՈՎՍԿԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ







Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։


## СОДЕРЖАНИЕ




**Адрес редакции** — ЦК КП Армении, II этаж, ком. 71, **телефон 2-52-78.**

# ՌՍԴԲՊ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

## (Համագումարի 60-ամյակի առթիվ)

*Մեր դարի շեմքին Ռուսաստանի ռևոլյուցիոներների, իսկական մարքսիստների առջև կանգնած էր պրոլետարիատի կենտրոնացած ու միասնական պարտիայի, նոր տիպի պարտիայի ստեղծման մեծ ու պատմական խնդիրը։ Եվրոպայի ու Ասիայի հսկայական մասն ընդգրկող երկրի բանվոր դասակարգը ինքնակալության և բուրժուազիայի դեմ տնտեսական ու քաղաքական պայքարի հրաշալի օրինակ էր տալիս։ Նրա իսկական դաշնակցի դերում հանդես էին գալիս կալվածատերերի և կուլակների կողմից դաժանորեն շահագործվող գյուղացիական լայն մասսաները։ Բանվորական շարժման մեջ ընդգրկվել էին Ռուսաստանի կենտրոնների ու ծայրամասերի բոլոր ազգերի հալածվող աշխատավորները։ Պետք էր գլխավորել շարժումը, պատշաճ ձևով կազմակերպել ազատատենչ մասսաների ռևոլյուցիոն պայքարը։ Մինչդեռ սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները ցաք ու ցրիվ էին, նրանց միջև գաղափարական տարաձայնություններ կային, բացակայում էր պայքարում հաղթելու համար ավանգարդի այնքան անհրաժեշտ համախմբված գործունեությունը։*

*1898 թվականին կայացած Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջին համագումարը թեև հռչակեց ՌՍԴԲՊ ստեղծումը, բայց դրանով սոցիալ-դեմոկրատների շարքերում չհաղթահարվեց գաղափարական և կազմակերպական տարընթացությունը։ Պարտիայի գոյությունը փաստորեն ձևական էր։ Իրոք ռևոլյուցիոն, միասնական ու կազմակերպված պարտիա ստեղծելու համար նախ անհրաժեշտ էր ի մի բերել երկրի տարբեր վայրերի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները և օպորտունիզմի դեմ մղվող անհաշտ պայքարում ապահովել իսկական ռևոլյուցիոներների գաղափարական և կազմակերպական համախմբումը։ Այդ խնդիրը լուծեց Վ. Ի. Լենինը։*

*Պրոլետարիատի հանճարեղ ուսուցիչներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գործի մեծ շարունակող Վ. Ի. Լենինը մշակեց պրոլետարական նոր տիպի պարտիայի ստեղծման*

պլան և գլխավորեց ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատների պայքարը ՌՍԴԲՊ II համագումար հրավիրելու համար։ Նա զարգացնելով պարտիայի վերաբերյալ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գաղափարները, մշակում է պարտիայի գաղափարական և կազմակերպական հիմունքները, ստեղծում պարտիայի վերաբերյալ լենինյան ուսմունքը։

Պարտիայի ստեղծման ճանապարհին Վ. Ի. Լենինը լայն պայքար ծավալեց օպորտունիզմի դեմ և տվեց ռևոլյուցիոն շարժման առաջ քաշած բոլոր արմատական հարցերի խոր մարքսիստական վերլուծությունը, մշակեց պարտիայի ծրագրի, ստրատեգիայի ու տակտիկայի մարքսիստական սկզբունքները։

1903 թվականի հուլիսի 17 (30)-ից մինչև 24-ը (օգոստոսի 6-ը) Բելգիայի մայրաքաղաք Բրյուսելում, իսկ հետո հուլիսի 29-ից (օգոստոսի 11-ից) մինչև օգոստոսի 10(23)-ը Լոնդոնում, գաղտնի կերպով տեղի ունեցան ՌՍԴԲՊ II համագումարի նիստերը։ Համագումար էին եկել Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական 26 կազմակերպությունների 43 ներկայացուցիչներ։ Համագումարի գլխավոր նպատակն էր ստեղծել մարտական ռևոլյուցիոն պարտիա, որը կարողա-



նար ղեկավարել ռուսական պրոլետարիատի պայքարը՝ ընդդեմ ինքնակալության և բուրժուական կարգերի, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի։

Պարտիայի ստեղծման համար Վ. Ի. Լենինի կատարած տիտանական աշխատանքը համագումարում հաջողությամբ պսակվեց. ՌՍԴԲՊ II համագումարում ստեղծվեց բոլշևիկների պարտիան՝ պրոլետարական մարքսիստական նոր տիպի պարտիան։ Դա տեղի ունեցավ օպորտունիստների ու մանրբուրժուական, նացիոնալիստական տարրերի դեմ մղվող համառ պայքարում, որի համար լենինյանները վաղօրոք խնամքով նախապատրաստվել էին։

Դեռևս համագումարից մի քանի շաբաթ առաջ Վ. Ի Լենինը նախատեսել էր համագումարի օրակարգի հարցերը, մշակել նրա աշխատանքի մանրամասն ծրագիրը և կազմել մի շարք բանաձևերի նախագծեր։ Համագումարի օրակարգի կարևորագույն հարցերն էին՝ պարտիայի ծրագրի ու կանոնադրության ընդունումը, ղեկավար պարտիական օրգանների ընտրությունը և մի շարք այլ հարցեր, որոնք վերաբերում էին առանձին հասարակական խավերի ու կազմակերպությունների նկատմամբ վերաբերմուն-

քի մշակմանը, սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների միջև կարծիքների ու գործողությունների միասնության ամրապնդմանը։

Վ. Ի. Լենինը և նրա կողմնակիցները վիթխարի նշանակություն էին տալիս պարտիայի մարքսիստական ծրագրի ընդունմանը։ Ծրագրում պետք է հստակ կերպով ձևակերպված լինեին պարտիայի նպատակներն ու խնդիրները պատմական զարգացման որոշակի էտապներում։ Միաժամանակ ծրագրում պետք է ցույց տրվեին պարտիայի առջև կանգնած խնդիրների իրականացման միջոցներն ու ուղիները։ Վ. Ի. Լենինը գըտնում էր, որ առանց գիտականորեն հիմնավորված ծրագրի, անհնար է պարտիան որպես ամբողջական քաղաքական օրգանիզմ, որն ընդունակ լիներ պատմական բոլոր շրջադարձային պահերին չշեղվել ճանապարհից և ճշտորեն ընթանար դեպի նպատակը։

Ահա հենց այդպիսի կարևորագույն թեորիական և քաղաքական փաստաթուղթ հանդիսացավ «Իսկրա»-ի մշակած ծրագիրը։ Վերջինս կազմված էր երկու մասից՝ մաքսիմում-ծրագրից և մինիմում-ծրագրից։ Առաջինում ասվում էր պարտիայի վերջնա-



կան նպատակների մասին, այն է՝ բուրժուազիայի տապալման և սոցիալիստական հասարակարգի կառուցման մասին, որի կարևորագույն ու անհրաժեշտ պայմանը համարվում էր սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակն ու պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը։ Մինիմում-ծրագրի պահանջն էր ինքնակալության խորտակումը, բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակն ու դեմոկրատական ռեսպուբլիկայի հաստատումը, որի պայմաններում պետք է կենսագործվեին 8-ժամյա աշխատանքային օր, բոլոր ազգերի լիակատար հավասարություն և նրանց ինքնորոշման իրավունք, գյուղում ճորտատիրության մնացուկների վերացում և այլն։

ՌՍԴԲՊ II համագումարի ընդունած ծրագիրը ռևոլյուցիոն պարտիայի իսկական մարքսիստական ծրագիր էր, բանվորական պարտիաների ծրագրի մեջ այն ժամանակ միակը, որում տրված էր պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարը։

ՌՍԴԲՊ ծրագրում իրենց խոր արտահայտությունը գտան Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի, երկրի բոլոր ազգությունների աշխատավորների ազգային և դասակարգային ազատագրության արմատական

շահերը։ Մերժելով օպորտունիստների, մաս-
նավորապես, հրեական սոցիալ-դեմոկրա-
տական կազմակերպության (Բունդի) ներ-
կայացուցիչների այն պահանջը, որ պար-
տիան կազմակերպվի ըստ ազգային հատ-
կանիշի, ֆեդերատիվ սկզբունքով, համա-
գումարը հաստատեց ինտերնացիոնալիզմի
լենինյան սկզբունքը, պարտիան դիտելով
երկրի ողջ բազմազգ պրոլետարիատի միաս-
նական ու անբաժան ավանգարդը։
Մարքսիստական պարտիայի ազգային
ծրագրի տեսական հիմունքներն ու գործնա-
կան պահանջները մշակել էր Վ. Ի. Լենինը։
Նա հոգ էր տարել այն մասին, որ պարտիան իր
առջև խնդիր դնի իրականացնելու ազգերի
խսկական ազատագրությունը և Ռուսաստա-
նի ճնշված ազգությունները ցարիզմի դեմ
մղած իրենց պայքարում հանդես գան պրո-
լետարիատի դաշնակցի դերում։ Պարտիայի
ծրագրում ազգերի ինքնորոշման և բոլոր ազ-
գությունների պատկանող քաղաքացիների
իրավահավասարության սկզբունքի ընդունու-
մը այդ բանի կատարյալ երաշխիք էր տա-
լիս։

Պարտիայի ազգային ծրագրի այդ կարև-
վորագույն սկզբունքների դեմ հանդես եկան
բունդականները։ Նրանք փորձեցին ազգերի



ինքնորոշման իրավունքի փոխարեն անց-կացնել կուլտուր-ազգային ավտոնոմիայի մասին բուրժուա-նացիոնալիստական ձևա-կերպումը։ Սակայն համագումարում բուն-դականներին ուժեղ հակահարված տրվեց և նրանց պահանջը մերժվեց։

Համագումարի կովկասյան դելեգատները և հատկապես ՌՍԴԲՊ Բաքվի կոմիտեի դե-լեգատ Բ. Կնունյանցը ջերմորեն պաշտպա-նեցին պրոլետարական ինտերնացիոնալիզ-մի լենինյան սկզբունքները։ Անդրկովկասի ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատները համե-րաշխ էին ողջ Ռուսաստանի պրոլետարիա-տի հետ։ Նրանք իրենց իդեալների իրակա-նացման երաշխիքը տեսնում էին երկրի բո-լոր ազգերի աշխատավոր մասսաների հա-մատեղ պայքարի մեջ։ Հակառակ բունդա-կանների, նրանք պահանջում էին, որ պար-տիան կազմակերպվի ինտերնացիոնալ սկզբունքով, իրենից ներկայացնի ոչ թե ազ-գային հատկանիշով ստեղծված կազմա-կերպությունների ֆեդերացիա, այլ լինի բո-լոր ազգերի բանվորների միասնական ու անբաժան ավանգարդը։

Համագումարում նացիոնալիստական սկզբունքի կողմնակիցների պարտությունը և պարտիայի կազմակերպման լենինյան

ինտերնացիոնալիստական սկզբունքի հաղթանակը հսկայական դեր խաղաց Ռուսաստանի բոլոր ազգերի շահագործվող մասսաների քաղաքական պայքարի միասնությունը կռելու գործում։

ՌՍԴԲՊ II համագումարում լուրջ տարաձայնություններ եղան պարտիայի կանոնադրության առաջին պարագրաֆի շուրջը, որը վերաբերում էր պարտիայի անդամության հարցին։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ պարտիայի անդամը պետք է անպայման մտնի նրա կազմակերպություններից որևէ մեկում և անձնական մասնակցություն ունենա նրա աշխատանքներին։ Մարտովը, ընդհակառակը, պարտիայի անդամի անձնական մասնակցությունը կազմակերպություններից մեկում պարտադիր չէր համարում։ Վեճը վերաբերում էր այն բանին, թե արդյոք պարտիան պետք է լինի դասակարգի առաջավոր և կազմակերպված ջոկատը, նրա կենտրոնացված ավանգարդը։ որն ունի երկաթյա կարգապահություն, թե պետք է պարտիայի դռները լայն բացել ողջ դասակարգի, ամեն մի գործադուլավորի առջև և այն մատնել անկարգապահության ու անկազմակերպվածության։ Մարտովը վերջինի կողմնակից էր։ Մինչդեռ Վ. Ի. Լենինը



պահանջում էր, որ պարտիան ունենա իր բոլոր անդամների համար պարտադիր երկաթյա կարգապահություն։ Նա գտնում էր, որ պարտիայի շարքերը պետք է ընդունել միայն դասակարգի համար անձնազոհ պայքարի ընդունակ, առաջավոր և գիտակից էլեմենտներին, որոնք պատրաստ են ենթարկվելու համապարտիական կանոններին և միշտ բարձր պահելու պարտիայի անդամի մեծ կոչումը։ Այսպիսով, հարցը վերաբերում էր պարտիայի կարևորագույն կազմակերպական սկզբունքներից մեկին, պարտիայի վերաբերյալ լենինյան ուսմունքի էությանը։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ պարտիայի յուրաքանչյուր անդամ իրեն պետք է պատասխանատու զգա պարտիայի առաջ, իսկ պարտիան իր հերթին պետք է հոգա պարտիայի յուրաքանչյուր անդամի նկատմամբ։ Պարտիայի անդամը գաղափարապես և գործնականում պետք է համերաշխ լինի ողջ պարտիայի հետ և անպայման մասնակցի նրա կազմակերպություններից մեկի աշխատանքին։ Այլ կերպ անհնար էր վերջ տալ բանվոր դասակարգի և սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների շարքերում գաղափարական տարընթացությանն ու կազմակերպական խառնաշփոթությանը։

Հարցի քննարկման ժամանակ հապճե-
պությունը և ոչ բոլոր դելեգատների կողմից
խնդրի հստակ ըմբռնումը հանգեցրեց նրան,
որ համագումարում անգամ կանոնադրու-
թյան առաջին պարագրաֆի Մարտովի ձ
վակերպումը, թեև կանոնադրության ամբողջ
տեքստը անցավ հիմնականում Վ. Ի.
Լենինի ներկայացրած նախագծի համաձայն:
Երկու տարի հետո, 1905 թվականին,
ՌՍԴԲՊ III համագումարը մերժեց Մարտո-
վի ձևակերպումը և կանոնադրության առա-
ջին պարագրաֆը նույնպես հաստատեց
ըստ Վ. Ի. Լենինի առաջարկի: Դա կենտ-
րոնացած, համախմբված և կարգապահ
պարտիայի վերաբերյալ լենինյան ուսմուն-
քի հաղթանակն էր:

ՌՍԴԲՊ II համագումարը նշանավորեց
լենինյան-իսկրայական ուղղության հաղթա-
նակը Ռուսաստանի բանվորական ռևոլյու-
ցիոն շարժման մեջ: Վ. Ի. Լենինը մարքսիզ-
մի դրոշի շուրջը համախմբեց բոլոր իսկա-
կան ռևոլյուցիոներներին, երկրի ռևոլյու-
ցիոն սոցիալ-դեմոկրատական կազմակեր-
պություններին: Վ. Ի. Լենինի կողմնակից-
ները համագումարում մեծամասնություն
էին կազմում կենտրոնական օրգանների՝
«Իսկրա»-ի խմբագրության և կենտրոնական



կոմիտեի ընտրության ժամանակ: Պարտված
և ջախջախված օպորտունիստները մնացին
որպես փոքրամասնություն: Այստեղից՝ Վ. Ի.
Լենինի կողմնակիցներին կոչեցին մեծա-
մասնականներ՝ բոլշևիկներ, հակառակորդնե-
րին՝ փոքրամասնականներ՝ մենշևիկներ:

ՌՍԴԲՊ II համագումարը ոչ միայն հա-
մառուսաստանյան, այլև համաշխարհային
պատմական նշանակություն ունեցող իրա-
դարձություն էր: Այն նշանավորեց բանվո-
րական շարժման մեջ ռևոլյուցիոն մարք-
սիզմի հաղթանակը մի այնպիսի ժամանակ,
երբ արևմտա-եվրոպական սոցիալ-դեմոկ-
րատական պարտիաներում Կ. Մարքսի
ուսմունքի նկատմամբ կատաղի ռևիզիա
էր արվում:

Բոլշևիկների պարտիան, զինված լինելով
մարքսիստական ծրագրով, ղեկավարեց Ռու-
սաստանի բանվոր դասակարգի և բոլոր շա-
հագործվող մասսաների պայքարը ընդդեմ
ցարիզմի ու բուրժուազիայի և 1917 թվակա-
նի հոկտեմբերին իրականացրեց սոցիալիս-
տական ռևոլյուցիայի հաղթանակը ու աշ-
խարհի մեկ վեցերորդ մասում դրեց առաջին
սոցիալիստական պետության հիմքերը:

Անցան պայքարի ու հաղթանակների նոր
տասնամյակներ: Պարտիայի գլխավորու-

թյամբ սովետական ժողովրդի հսկայական պայքարն ու աշխատանքը հանգեցրին ՍՍՌՄ-ում սոցիալիզմի լիակատար հաղթանակին։

Ընդհանրացնելով կատարված սոցիալ-տնտեսական խոր վերափոխությունների արդյունքները, ՍՄԿՊ XXII համագումարը հաստատեց պարտիայի նոր ծրագիրը, որտեղ տրված է ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման կոնկրետ, գիտականորեն հիմնավորված պլանը։

Սովետական Միության կոմունիստական պարտիայի վաթսունամյակը ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև հայ ժողովրդի տոնն է։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հայ ժողովուրդը թոթափեց ցարիզմի և կապիտալիզմի լուծը, կառուցեց սոցիալիզմ և այսօր սովետական ժողովուրդների մեծ ընտանիքում հաջողությամբ կենսագործում է կոմունիզմի կառուցման ծրագիրը։

Ապագան պատկանում է կոմունիզմին, որի հաղթանակի համար վաթսուն տարի անդադրում պայքար է մղում Վ. Ի. Լենինի հիմնադրած բոլշևիկների պարտիան՝ Սովետական Միության կոմունիստական պարտիան։

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ





# ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայրենասիրական այն նախաձեռնությունը, որով հանդես եկան Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական և էլեկտրալամպերի գործարանների աշխատողները, լայն արձագանք գտավ ձեթ-օճառ կոմբինատում։ Ձեռնարկության բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները հաշվի առնելով եղած հնարավորություններն ու ռեզերվները առաջավոր ձեռնարկությունների օրինակով պարտավորվեցին համախառն արտադրանքի 1963 թվականի պլանը կատարել առնվազն 103,5 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը պլանայինի հանդեպ բարձրացնել մեկ տոկոսով, թողարկվող արտադրանքի ինքնարժեքը իջեցնել 0,5 տոկոսով, խնայել 200 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 50 տոննա վառելիք։

Կոմբինատի կոլեկտիվը մի շարք լուրջ պարտավորություններ ստանձնեց նաև ռա-



ցիոնալիզատորական-գյուտարարական շարժման ծավալման, բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների տեխնիկական գիտելիքների բարձրացման ուղղությամբ։

Անցել են յոթնամյակի հինգերորդ տարվա 5 ամիսները։ Մեր կոմբինատի կոլեկտիվը այդ բոլոր ամիսներին աշխատել է համաչափ և բարձր արտադրողականությամբ։ Կոմբինատի բաժանմունքների, ցեխերի ու հերթափոխությունների միջև ծավալված մրցության մեջ հետաքրքիր էջեր են գրում կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանացած հիդրոգենիզացիոն բաժանմունքի, ինչպես նաև բուսական յուղի և օճառի ու մարգարինի բաժանմունքների աշխատողները։ Բոլոր տեղամասերում էլ մարդիկ օրեցօր բարելավելով աշխատանքի կազմակերպումը, ավելի ու ավելի լավ օգտագործելով արտադրական կարողությունները, սիստեմատիկ կերպով ավելացնում են արտադրանքի թողարկումը։ Օրինակ, հիդրոգենիզացիոն բաժանմունքի աշխատողները ճարպայուղի թողարկման ընթացիկ տարվա 4 ամիսների պլանը կատարել են 107,2 տոկոսով, իսկ մայիս ամսվա պլանը ժամկետից 7 օր շուտ։ Նրանք այժմ պայքա-



րում են պլանից դուրս թողարկել մոտ 200 տոննա ճարպայուղ։ Անցյալ տարվա վերջերին կոմբինատի կոլեկտիվը շահագործման հանձնեց զտման (էքստրակցիոն) բաժանմունքը, որի շահագործումը խոշոր չափով նպաստեց քուսպի մեջ նախկինում տեղի ունեցող կորուստների կրճատման հաշվին բուսական յուղի թողարկման ավելացմանը։ Եթե նախկինում քուսպի մեկ տոննայի մեջ յուղի կորուստը կազմում էր մինչև 8 տոկոս, ապա այժմ այդ բաժանմունքի շահագործումից հետո այն կազմում է 0,8-ից մինչև մեկ տոկոս։

Այդ խոշոր միջոցառումը հնարավորություն է տալիս տարեկան ստանալ մոտ 1.500 տոննա լրացուցիչ բուսական յուղ։ Ընթացիկ տարվա 5 ամիսներին զտման բաժանմունքը տվել է մոտ 800 տոննա բուսական յուղ։

Բուսական յուղի և զտման բաժանմունքների աշխատողները ժամկետից շուտ կատարելով ընթացիկ տարվա 5 ամիսների արտադրական պլանը, 1962 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, ավել են արտադրել մոտ 2000 տոննա յուղ։

Բարձր արտադրողական աշխատանքի

Հիանալի օրինակ է ցույց տալիս օճառագործների կոլեկտիվը։ Նրանց մոտ բարձրացել է արտադրության կուլտուրան, զգալի չափով բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը։ Բաժանմունքի աշխատողները ընթացիկ տարում ավելացրին թողարկվող արտադրանքը 2 նոր տեսակներով։ Զգալի չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար որոշակի դեր խաղաց տեխնիկապես հիմնավորված նորմաների արմատավորումը։

Օճառագործների կոլեկտիվը այս տարվա 5 ամիսներին, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, բնակչությանն ավել է տվել 280 տոննա օճառ։ Արտադրական այս հաջողությունների համար բաժանմունքի աշխատողները նվաճել են կոմբինատի փոխանցիկ դրոշը։

1963 թվականի անցած 5 ամիսների ընթացքում կոմբինատի կոլեկտիվը հաջողությամբ կատարեց ստանձնած պարտավորությունները։ Համախառն արտադրանքի ընթացիկ



տարվա առաջին եռամսյակի պլանը կատարվել է 103,5 տոկոսով, իսկ 5 ամսվա պլանը կատարվել է ժամկետից 7 օր շուտ։ Պլանից դուրս երկրին տրվել է 310 հազար ռուբլու արտադրանք։ Այդ նույն ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքը գերակատարվել է 3,2 տոկոսով, իսկ արտադրանքի արտապլանային իջեցումից ձեռնարկությունը ստացել է 100 հազար ռուբլի խնայողություն։

Կոմբինատի բանվորներն ու ինժեներատեխնիկական աշխատողները անցած ժամանակաշրջանում զգալի աշխատանք են կատարել նորագույն տեխնիկայի ներդրման, աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Մոտ օրերս տնտեսական օճառի բաժնում կավարտվեն օճառի ավտոմատ մշակման ագրեգատի մոնտաժման աշխատանքները և այն շահագործման կհանձնվի տարվա երկրորդ կեսում։ Բուսական յուղի լցման ցեխում ավարտվել է շշերի լվացման և չորացման ագրեգատի տեղադրման աշխատանքները, բեռնման և բեռնաթափման աշխատանքների մեքենայացման նպատակով տեղադրված են լրացուցիչ տրանսպորտյորներ։ Լուրջ տեխնի-

կական կազմակերպչական միջոցառումներ են անցկացվում մարգարինի բաժանմունքում որի իրականացումը խոշոր չափով կնպաստի արտադրանքի թողարկման ավելացմանը և նրա որակի բարելավմանը։

Տարվա երկրորդ կեսից կոմբինատում կավելացվեն հեղուկ նյութերի պահպանման տարողությունները, որը զգալի չափով կնպաստի արտադրական բաժանմունքների համաչափ աշխատանքի կազմակերպմանը։

Ձեռնարկության կոլեկտիվի արտադրական հաջողություններին խոշոր չափով նպաստում են այն բարեկամական մրցությունը ու արտադրական համագործակցությունը, որը գնալով ավելի լայն ծավալ է ստանում եղբայրական մյուս ռեսպուբլիկաների ձեթ-օճառի կոմբինատների կոլեկտիվների հետ։

Կոմբինատի կոլեկտիվը 1963 թվականին մրցության մեջ է մտել Կիրովաբադի (Ադրբեջան), Ռիգայի (Լատվիա) և Բելցին (Մոլդավիա) քաղաքների ձեթ-օճառ կոմբինատների աշխատողների հետ։ Օրերս Կիրովաբադի ձեթ-օճառի կոմբինատի պատվիրակությունը եղավ Երևանում։ Ստուգվեց մրցությամբ 1963 թվականի առաջին եռամսյակի ստանձնած պարտավորությունների կատարման և արտադրության մեջ առաջավոր փոր-



ձի արմատավորման ընթացքը։ Նույն նպատակով մեր պատվիրակությունները կայցելեն մրցակից բարեկամների մոտ։

Այս տարի Երևանի ձեթ-օճառի կոմբինատի առջև ավելի լուրջ խնդիրներ են դրված։ Պետք է զգալի չափով ավելացնել օճառի, մարգարինի, ճարպայուղի արտադրությունը։ Կոմբինատի մարդկանց անցած ամիսների և ներկայիս ոգեշնչող, ստեղծագործ աշխատանքը հիմք է տալիս ասելու, որ յոթնամյակի 5-րդ տարվա պետական առաջադրանքը և սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները նույնպես զգալիորեն կգերակատարվեն և 103,5 տոկոսի բնագիծը կնվաճվի։

Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Երևանի ձեթ-օճառի կոմբինատի աշխատանքի և աշխատավարձի բաժնի վարիչ

# ԱՆՇԱՀԱԽՆԴԻՐ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԹՈՒՅԼ ԶԱՐԳԱՑԱԾ ԵՐԿՐՆԵՐԻՆ

(Թվեր և փաստեր)

*Սովետական Միությունը և բոլոր սոցիալիստական երկրները իրենց ինտերնացիոնալ պարտքն են համարում ըստ ամենայնի աջակցություն և բազմակողմանի օգնություն ցույց տալ ազգային-ազատագրական շարժմանը։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*

Սովետական Միությունը, սոցիալիստական երկրները թույլ զարգացած երկրների ժողովուրդների անշահախնդիր բարեկամներն են։ Նրանք կատարելով իրենց ինտերնացիոնալ պարտքը, մշտական օգնություն են ցույց տալիս թույլ զարգացած երկրներին, որպեսզի վերջիններս ձեռք բերեն տնտեսական անկախություն և ազատագրվեն իմպերիալիստների լծից։ Ահա տեղեկություններ այդ մասին։

*Սոցիալիստական երկրները վերջին ժամանակաշրջանում թույլ զարգացած երկրներում կառուցել և կառուցում են 1.000 օբյեկտ։*



*Նույն երկրներում միայն Սովետական Միությունը անցյալ տարվա տվյալներով կառուցել է 480 օբյեկտ, որից սև և գունավոր մետալուրգիայի 34 գործարան և ցեխ, ավելի քան 30 մեքենաշինական և մետաղամշակման գործարան, 20 էլեկտրակայան, 11 քիմիական գործարան։*

*Թույլ զարգացած երկրներում Սովետական Միության օգնությամբ կառուցված ձեռնարկությունները տարեկան կարտադրեն հազարավոր մեքենաներ ու սարքավորումներ, 6,6 միլիոն տոննա նավթամթերքներ, 20 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 8,5 միլիոն տոննա պողպատ, ձուլվածք, չուգուն և այլն։*

*Ներկայումս Հնդկաստանի արդյունաբերության մեջ երրորդ հնգամյա պլանով կատարվող պետական կապիտալ ներդրումների 12 տոկոսը ծածկվում է սովետական վարկերով։*

*Հնդկաստանի աշխարհահռչակ Բհիլայի պողպատաձուլական գործարանները կառուցվել են Սովետական Միության ֆինանսական օգնությամբ։*

*Սովետական Միության կողմից տրվող դրամական վարկերի համեմատությամբ չնչին տոկոս է կազմում դրամական այն վարկը, որ Աֆղանստանը ստանում է կապիտալիստական երկրներից։ Աֆղանստանի կողմից դրսից ստացվող դրամական միջոցների ընդ-*

հանուր գումարի մեջ սովետական օգնությունը կազմում է 70 տոկոս:

Եթե կապիտալիստական երկրները, հատկապես ԱՄՆ-ը, Անգլիան, Արևմտյան Գերմանիան թույլ զարգացած երկրներին վարկեր են տալիս 5—6 և ավելի տոկոսներով, ապա Սովետական Միությունը՝ միայն 2,5 տոկոսով:

Ներկայումս Միջին Արևելքում մեծ հռչակ է վայելում Սիրիայի Հոմս քաղաքում Չեխոսլովակիայի օգնությամբ կառուցված նավթավերամշակման գործարանը:

Երկար ժամանակ Ինդոնեզիան մեծ գումար էր վճարում արտասահմանից ցեմենտ գնելու համար: Միայն 1961 թվականին արտասահմանից գնվել է 75 հազար տոննա ցեմենտ: Ներկայումս Ինդոնեզիան ունի հայրենական ցեմենտ, որովհետև այնտեղ Սովետական Միության և Չեխոսլովակիայի համատեղ օգնությամբ կառուցվել է ցեմենտի գործարան:

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո սոցիալիստական Չեխոսլովակիան Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում կառուցել է ավելի քան 150 արդյունաբերական ձեռնարկություն:

Գնալով ուժեղանում է Սովետական Միության ու աֆրիկյան պետությունների միջև ծավալվող տնտեսա-



կան և տեխնիկական համագործակցությունը: Սովետական Միությունը օգնություն է ցույց տալիս աֆրիկյան պետություններին 250 օբյեկտներ կառուցելու գործում՝ գործարաններ, էլեկտրակայաններ, ջրանցքներ և այլն: Օրինակ, Ասուանյան ամբարտակը, որը աշխարհի խոշորագույն հիդրոտեխնիկական կառուցվածքներից է և այլն:

Աֆրիկյան պետություններում կառուցված և կառուցվող ձեռնարկություններից 50-ը կտան արտադրական միջոցների արտադրության մեքենաներ: Նոր կառուցված և կառուցվող օբյեկտներից 11-ը էլեկտրակայաններ են, 34-ը՝ թեթև և սննդի արդյունաբերության ձեռնարկություններ:

Այն ձեռնարկությունները, որոնք ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցվել են Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայում, ներկայումս մեծ քանակությամբ արտադրանք են տալիս: Մետալուրգիական արդյունաբերության արտադրանքի 30 տոկոսը, մեքենաշինության 40 և լեռնահանքային ու նավթային արդյունաբերության 50 տոկոսը տալիս են ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցված ձեռնարկությունները:

1962 թվականին ՍՍՌՄ-ի ակտիվ օգնությամբ Հնդկաստանում կառուցվեց Նեյվելիի ջերմաէլեկտրակայանը 400 հազար կիլովատ հզորությամբ:

Գաղութակալության անարգ լծից ազատագրված երկրներում միայն 1959 թվականին ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցվել են 100 արդյունաբերական օբյեկտ, 1960 թվականին՝ 300, 1961 թվականին՝ 350 օբյեկտ։

1962 թվականին Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի թույլ զարգացած երկրներին սոցիալիստական համագործակցության երկրները տվել են 3,5 միլիարդ ռուբլի փոխառություն, այդ թվում՝ ՍՍՌՄ-ը՝ 3 միլիարդ, Չեխոսլովակիան՝ 300 միլիոն, Լեհաստանը՝ 160 միլիոն, Ռումինիան՝ 70 միլիոն ռուբլի։

Սոցիալիստական համագործակցության երկրները մեծ օգնություն են ցույց տալիս թույլ զարգացած երկրներում ազգային կադրերի ստեղծման գործում։ Հնդկաստանում և Բիրմայում ՍՍՌՄ-ի օգնությամբ ստեղծվել և այժմ գործում են բարձրագույն ուսումնական հաստատություններ՝ ինժեներա-տեխնիկական անձնակազմ պատրաստելու նպատակով։

Կամբոջայում ՍՍՌՄ-ը կառուցում է տեխնոլոգիական ինստիտուտ, որտեղ հնարավորություն կունենան սովորելու 1.000 ուսանող և 50 ասպիրանտ։

ՍՍՌՄ-ը տեխնիկական ուսումնարան է կառուցում Եթովպիայում։ 1964 թվականին կավարտվի շինարարությունը և դպրոցը իր դռները կբացի 1.000 սովորողների առջև։



Միայն Մոսկվայի Պատրիս Լումումբայի անվան ժողովուրդների բարեկամության համալսարանում սովորում են 63 երկրների երիտասարդներ։

Բարձրագույն ուսումնական հաստատություններ կկառուցվեն նաև Ինդոնեզիայում, Գվինեայում և այլ երկրներում։

Հնդկաստանում սովետական և ռումինական մասնագետները պատրաստել են ավելի քան 5 հազար նավթագործներ։ Աֆղանստանում սոցիալիստական համագործակցության երկրների մասնագետները պատրաստել են 6,5 հազար տարբեր պրոֆեսիայի մասնագետներ։

Միայն 1960 թվականին ՍՍՌՄ-ից արտահանվող մեքենաների և սարքավորումների 35 տոկոսը ուղարկվել է թույլ զարգացած երկրներ։

1955 թվականի համեմատությամբ սոցիալիստական համագործակցության երկրների ապրանքափոխանակությունը թույլ զարգացած երկրների հետ աճել է 3,2 անգամ։

Մինչպատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ թույլ զարգացած երկրներից կատարվող ներմուծումը ՍՍՌՄ-ում ավելացել է 11,8 անգամ, իսկ 1955 թվականի համեմատությամբ՝ 3,3 անգամ։

ՍՍՌՄ-ը 1956—1960 թվականներին թույլ զարգացած երկրներ է արտահանել նավթ և նավթամթերքներ՝ 100 միլիոն տոննա, սև և գունավոր մետաղ՝ 20 միլիոն տոննա, երկաթահանք՝ 60 միլիոն տոննա և այլն։

Այժմ ՍՍՌՄ-ը թույլ զարգացած երկրներ է արտահանում 3.500 անուն մեքենաներ ու սարքավորում։

Մինչպատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում ՍՍՌՄ-ի արտահանումը միայն 1960 թվականին ավելացել է 17,6 անգամ, իսկ 1955 թվականի համեմատությամբ՝ 3,9 անգամ։

Լայնորեն զարգանում են ՍՍՌՄ-ի արտաքին առևտրական հարաբերությունները Ասիայի երկրների հետ։ 1960 թվականին ՍՍՌՄ-ի Ասիայի երկրների հետ կատարվող ամբողջ առևտրի մոտ կես մասը կատարվում էր Ասիայի թույլ զարգացած երկրների հետ։

Սկսած 1953 թվականից մինչև 1959 թվականը լատինա-ամերիկյան երկրների արտաքին առևտրական շրջանառության մեջ սոցիալիստական երկրների բաժինը ավելացավ 3 անգամ։ Այն շարունակում է աճել նաև այժմ։

Սովետական Միությունը և բոլոր սոցիալիստական երկրները շարունակում են իրենց անշահախնդիր օգնությունը թույլ զարգացած երկրներին, որպեսզի նրանք պաշտպանեն իրենց ազգային անկախությունը, բարգավաճեն տնտեսապես և ճակաճարված տան իմպերիալիստական տերությունների ոտնձգություններին։



# ՓՐԸԶՆԵՐ ԵՎ… ԲԱԶԱՆԵՐ

## Ագրեսիայի և պրովոկացիաների ամերիկյան օջախները

Ով եղել է Մոսկվայի նկարիչների ցուցահանդեսում, չէր կարող չնկատել Վ. Գովորկովի «Փրազներ և… բազաներ» երգիծական պատկտավը։ Սովետական նկարչի կողմից պատկերված քարտեզի մոտ կանգնած է յանկին։ Երկրագնդի մի շարք երկրներում տեղաբաշխված բազաների վրա նա դրոշիկներ է դնում, իսկ պայուսակում պահած ունի… զենք։ Երգիծական նկարը դիպուկ կերպով բնորոշում է ամերիկյան իմպերիալիզմի խաղաղասիրական դեմքը. դրոշիկների, խաղաղասիրական ֆրազների ետևը թաքնված են անդրօվկիանոսյան «կատաղիների» իսկական մտադրությունները՝ դառնալ աշխարհի տիրակալներ։

Երկրագնդի ոչ մի կապիտալիստական պետություն ռազմական բազաների այնքան ընդարձակ սիստեմ չունի և արտասահմանում այնքան զորք չի պահում, որ-

քան Ամերիկայի Միացյալ Նահանգները։ Կարաիբյան ծովի շրջանում վտանգավոր ճգնաժամի վերացումից հետո Լիբիայի «Ար-Ռաքիբ» թերթը գրել է. «Այժմ, երբ մարդիկ թեթևացած շունչ քաշեցին, անհրաժեշտ է բացահայտել այն պատճառները, որոնք քիչ էր մնում աղետի հասցնեին և եթե չվերացվեն, կարող են վերջիվերջո հանգեցնել կործանարար պատերազմի։ Այդ պատճառները լավ հայտնի են։ Դրանցից գլխավորն է ուրիշի տերիտորիաներում ռազմական բազաների առկայությունը։ Այդ սարսափելի ճգնաժամում երկարատև աճուրդի նախաձեռնողը պարոն Քեննեդին էր։ Բայց չէ՞ որ հենց Ամերիկայի Միացյալ Նահանգները ռազմական բազաներ ունեն շատ երկրներում, այդ թվում նաև մեր երկրում...»։

Օտարերկրյա, առաջին հերթին ամերիկյան մամուլի տվյալներով, ներկայումս Միացյալ Նահանգները ունեն տարբեր տիպի ավելի քան վեց հազար ռազմական օբյեկտներ՝ սկսած ռազմա-օդային և հրթիռային բազաներից և վերջացրած պոլիգոններով, զինապահեստներով, կապի պոստերով և ուսումնական կենտրոններով։ Այդ օբյեկտների ավելի քան մեկ երրորդը գտնվում է ԱՄՆ-ի սահմաններից դուրս՝ իննը-



սուն տարբեր երկրներում ու շրջաններում։ Այդտեղ տեղավորված են յոթ հարյուր հազարից ավելի ամերիկյան զինծառայողներ, կամ Միացյալ Նահանգների զինված ուժերի անձնակազմի մոտ երեսուն տոկոսը։

Ուրիշի տերիտորիաներում ամերիկյան ռազմական բազաների ցանցը ձգվել է արևմուտքից մինչև արևելք՝ Գրենլանդիա-յից և Անգլիայից մինչև Ֆիլիպիններ ու Ճապոնիա։ Այդ ցանցի հիմքն են կազմում ավելի քան հարյուր ավիացիոն, վաթսուն ռազմա-ծովային և մի քանի տասնյակ հրթիռային բազաները։

Վաշինգտոնի ռազմա-ստրատեգիական պլաններում կենտրոնական տեղ է գրավում Արևմտյան Եվրոպան։ «Եվրոպայի աշխարհագրական դիրքը,—ասված է ԱՄՆ-ի կառավարական օրգանների կողմից հրապարակված բրոշյուրներից մեկում,—այն հանգուցային շրջան է դարձնում ազատ աշխարհի պաշտպանության գործում։ Արևմտյան Եվրոպայում կան բազմաթիվ հիանալի նավահանգիստներ, օդային բազաները տեղադրված են սովետական իշխանության հենց սրտի մոտ»։

Արևմտյան Եվրոպայի տերիտորիայում կան հսկայական քանակությամբ ամերիկ-

յան ռազմական օբյեկտներ, այդտեղ է
կենտրոնացված արտասահմանում գտնվող
ամերիկյան զորքերի մեծ մասը՝ գրեթե կես
միլիոն զինծառայողներ: ՆԱՏՕ-ի գծով օդա-
նավակայաններ ստեղծելուց բացի, որոնք
ապահովում են գլխավորապես տակտիկա-
կան նշանակություն ունեցող ավիացիային,
Միացյալ Նահանգները այդ ագրեսիվ բլոկի
մասնակից երկրների տերիտորիաներում
կառուցել են իրենց սեփական ռազմա-օդա-
յին բազաները, իսկ վերջին ժամանակներս՝
նաև մի շարք հրթիռային բազաներ:

Պենտագոնի ագրեսիվ պլաններում ավիա-
պոստի դեր է կատարում Արևմտյան Գեր-
մանիան: Այդտեղ է գտնվում ամերիկյան
7-րդ բանակը, որի անձնակազմը բաղկա-
ցած է մոտ երեք հարյուր հազար մարդուց
և որը պենտագոնի հարվածային բռունցքն է
Կենտրոնական Եվրոպայի ռազմաբեմում:
ԳՖՌ-ում ստեղծված է ամերիկյան ավիա-
ցիոն բազաների կոմպլեքս: Յուրաքանչյուր
բազա ունի երկու-երեք բետոնապատ թռիչք-
ուղի, ժամանակակից նավիգացիոն սար-
քավորումներ, ավիանորոգման արհեստա-
նոցներ, վառելիքի, զենքի ու զինամթերքի
ստորերկրյա պահեստներ: Այդ կոմպլեքսը
նախատեսված է ԱՄՆ-ի 17-րդ օդային նա-



վատորմին սպասարկելու համար: Արևմտ-
յան Գերմանիայի տերիտորիայում կառուց-
ված են նաև հրթիռի արձակման հրապա-
րակներ, այդ թվում միջուկային մարտա-
գլխիկով հրթիռների համար: Այս ամենը
Արևմտյան Գերմանիան դարձնում է ՆԱՏՕ-ի
ագրեսիվ բլոկի առաջատար ռազմական
պլացդարմը Եվրոպայի կենտրոնում, պլաց-
դարմ, որի գոյությունն ուժեղացնում է
հրթիռա-միջուկային պատերազմի սանձա-
զերծման սպառնալիքը:

Անգլիան վեր է ածվել ՆԱՏՕ-ի «անխոր-
տակելի ավիակրի» և «հրթիռակրի»: Այդ-
տեղ կա ԱՄՆ-ի ռազմա-օդային տասնյոթ
բազա: Ինչպես հայտնի է, այդ բազաներից
է ստարտ վերցրել ամերիկյան «ՌԲ—47»
ինքնաթիռը, որը 1960 թվականի ամռանը
Սովետական Միության օդային տարածու-
թյունը խախտեց Կոլա թերակղզու շրջա-
նում: Անգլիայում կառուցված են նաև գոր-
ծողության միջին շառավիղ ունեցող «Թոր»
տիպի բալիստիկ հրթիռների մոտավորապես
քսան ստարտային հրապարակներ, ինչպես
նաև դրանց համար նախատեսված միջուկա-
յին լիցքերի պահեստներ: Հոլի—Լոխում
(Շոտլանդիա) բազավորված են «պոլարիս»
հրթիռներով զինված ամերիկյան ատոմա-

յին սուզանավեր։ Անգլիայում կան քառա-
սուն հազար, իսկ Ֆրանսիայում՝ հիսուն հա-
զար ամերիկյան զինծառայողներ։
ԱՄՆ-ի ստրատեգիական պլաններում հա-
տուկ տեղ է տրվում Ազորյան կղզիներին
(պատկանում են Պորտուգալիային), Գրեն-
լանդիային և Իսլանդիային։ Վերջին ժա-
մանակներս Իսլանդիայում բազաներ են
ստեղծվել ատոմային սուզանավերի համար,
որոնք հագեցված են միջուկային մարտա-
գլխիկներով օժտված «պոլարիս» հրթիռնե-
րով։ Մարտական հրթիռների այդպիսի
«շարժական ստարտային հրապարակներ»
են լողում Հյուսիսային Ատլանտիկայում,
Կանադայի և Ալյասկայի բևեռային ջրերում։
Ըստ որում, պենտագոնի ներկայացուցիչները
չեն թաքցնում, որ պլանավորված է հենց
այդտեղից հրթիռամիջուկային հարվածներ
հասցնել Ուրալի, Սիբիրի, սովետական Հե-
ռավոր Արևելքի կարևորագույն կենտրոննե-
րին։ Պենտագոնի ղեկավարները մեծ նշա-
նակություն են տալիս Միջերկրական ծովի
ավազանի արևելյան մասում՝ Թուրքիայի և
Հունաստանի տերիտորիաներում ռազմա-
ստրատեգիական պլացդարմի ստեղծմանը։
ԱՄՆ-ը Հունաստանում կառուցել է տաս-
նյակ բազաներ, առաջին հերթին ծանր



ռմբակոծիչների համար նախատեսված խո-
շոր օդանավակայաններ։ Թուրքիայի տերի-
տորիայում ամերիկացիների ղեկավարու-
թյամբ կառուցվել և վերակառուցվել են մոտ
տասնհինգ օդանավակայաններ և ավիա-
բազաներ։ Թուրքիայի շատ նավահանգիստ-
ներ հարմարեցված են ամերիկյան վեցե-
րորդ նավատորմի նավերի բազավորման
համար։ Միացյալ Նահանգները Թուրքիայի
կառավարող շրջանների համաձայնությամբ
Իզմիրի շրջանում ստեղծել են հրթիռային
բազա։
Ամերիկյան բազաների ցանցով են պա-
տած նաև Հարավ-Արևելյան Ասիայի ու Հե-
ռավոր Արևելքի՝ ԱՄՆ-ից կախում ունեցող
երկրները։ Այդ շրջանում կենտրոնական տեղ
է գրավում Ճապոնիան։ Այստեղ Միացյալ
Նահանգներն ունեն ավելի քան 15 խոշոր
ավիաբազաներ և մի շարք օդանավակայան-
ներ։ Հարավային Կորեայում կենտրոնաց-
ված է ամերիկյան զորքերի մի խոշոր խըմ-
բավորում՝ ավելի քան տասնհինգ հազար
մարդ, ավիացիայի և նավատորմի զգալի
ուժեր։ Տայվան կղզում ամերիկացիները
տասնյակ ռազմական օբյեկտներ են կառու-
ցել իրենց ավիացիայի ու նավատորմի հա-
մար, ինչպես նաև տեղաբաշխել են հրթի-

ռային զենք: Օդանավակայանների և բա-
զաների ցանցը տարեցտարի մեծանում է
Հարավային Վիետնամում:
Ագրեսիայի օջախների այդ մեծ ցանկին
հարկավոր է ավելացնել Լատինական Ամե-
րիկայում ԱՄՆ-ի ստեղծած բազմաթիվ
ռազմական օբյեկտները: Յանկիները ամուր
կառչել են Գուանտանամոյի իրենց ռազմա-
ծովային բազայից: Այդ բազան նրանց հար-
կավոր է որպես սոցիալիստական Կուբայի
դեմ ագրեսիաների և պրովոկացիաների
օջախ:
Այսպիսով, Միացյալ Նահանգները ստեղ-
ծել են «բազաների մի ամբողջ կայսրու-
թյուն», որը շարագուշակ ցանցով պատել է
ամբողջ երկրագունդը: Այդ բազաները լուրջ
սպառնալիք են խաղաղության և ժողովուրդ-
ների անվտանգության համար: Վտանգը ա-
վելի մեծացավ, երբ բազաներում սկսեցին
տեղաբաշխել հրթիռային կայանքներ: Ինչ-
պես խոստովանում է ԱՄՆ-ի մամուլը, ամե-
րիկյան բազաները պետք է ավիացիայի և
հրթիռային զենքի ուղղակի հարվածի սպառ-
նալիքի տակ պահեն խաղաղասեր երկրնե-
րը:
Այս խոստովանությունը վկայում է ամե-
րիկյան իմպերիալիստների ագրեսիվ մտա-



դրությունների մասին: Եվ ոչ ոքի չեն կա-
րող մոլորության մեջ գցել Վաշինգտոնի
քաղաքագետների այն փարիսեական հայ-
տարարությունները, թե իբր արտասահմա-
նում իրականացվող իրենց ռազմական պլ-
աններըը «զուտ պաշտպանական բնույթ են
կրում»:
ԱՄՆ-ի ռազմական բազաները սպառնա-
լիք են ոչ միայն սոցիալիզմի լագերի հա-
մար: Միացյալ Նահանգները դրանք օգտա-
գործում են ազգային ազատագրական շար-
ժումը ճնշելու, ուրիշ պետությունների գոր-
ծերին միջամտելու համար: Ամենուրեք, ուր
կան ԱՄՆ-ի զորքեր, յանկի-զինծառայող-
ներն իրենց պահում են որպես նվաճողներ:
Նրանք կատարել են հազարավոր հանցա-
գործություններ: Տեղական բնակչության
նկատմամբ ամերիկյան զինվորականների
սանձարձակությունները սահման չունեն:
Ահա մի քանի օրինակ:
Մյունխենում (Արևմտյան Գերմանիա)
ԱՄՆ-ի զինծառայողները, ի պատասխան
փոխադրության համար վճարելու վարորդի
պահանջի, կրակել են նրա վրա, ծանր վիրա-
վորել գլխից: Հանցավորը թաքնվել է: Ամե-
րիկյան մի զինվոր թուրք շոֆերին դաժանո-
րեն ծեծել է միայն այն բանի համար, որ

նա օտարականին դիտողություն է արել փողոցային երթևեկության կանոնները խախտելու համար։ Իզմիրում ծառայության ժամկետը վերջացրած մի քանի ամերիկացի զինծառայողների մոտ գտնվել են թուրքերի արժանապատվությունը վիրավորող «Հրաժեշտի ուղերձներ», որոնց մեջ Թուրքիան անվանվել է «դժոխային անկյուն»։ Մեկնաբանելով այս փաստը, «Ենի Սաբահ» թերթը զայրույթով գրել է. «Ի՞նչ ենք արել մենք այդ ամերիկացիներին։ Նրանք առևանգում են մեր աղջիկներին և զբաղվում հատուկ խանութներում գնված իրերի սպեկուլյացիայով։ Նրանք ինչպես հարկն է չեն պատժվում, երբ իրենց մեքենաների տակն են գցում մեր երեխաներին։ Նրանք զբաղվում են վալյուտայի մաքսանենգությամբ և կռվտոց են սարքում գիշերային ակումբներում։ Նրանք պատռում են մեր դրոշակները, գրավել են մեր ամենալավ տները։ Եվ ահա, վերջապես, այդ ամենից հետո, Նրանք այստեղ մնացողներին հրաժեշտ տալու ժամանակ հայտարարում են, թե փրկվեցին «դժոխային անկյունից»։

Ժողովրդին հատկապես անհանգստացնում են ամերիկյան զորքերի զինավարժությունները և ինքնաթիռների թռիչքները,



որոնք հաճախ ծանր հետևանքներ են ունենում։ Վերջերս ամերիկյան «Բ—57» ռեակտիվ ռմբակոծիչից նետված ուսումնական մի ռումբ ընկավ Կացուտայի (Ճապոնիա) գյուղատնտեսական կոոպերատիվի գրասենյակի վրա։ Դա առաջին դեպքը չէ։ Ամերիկյան մի «ասս» գնդակոծել է ճապոնացի կանանց։

Բազմաթիվ փաստեր լիովին բացահայտում են ամերիկյան զինվորականության գազանային դեմքը և այն վտանգը, որ տեղի բնակչությանն սպառնում են ԱՄՆ-ի արտասահմանյան ռազմական բազաները։ Դրանով ակնառու կերպով արտահայտվում են ամերիկյան իմպերիալիզմի քաղաքականության տիպիկ գծերը, իմպերիալիզմ, որը հանդես է գալիս համաշխարհային ժանդարմի, ժողովուրդների ազատությունն ու անկախությունը խեղդողի դերում։

Աշխարհի ժողովուրդները գիտակցում են Միացյալ Նահանգների ռազմական բազաներից սպասվող վտանգը։ Ուստի նրանք չեն դադարեցնում պայքարը դրանց վերացման, իրենց երկրների տերիտորիաներից ամերիկյան զորքերի դուրս բերման համար։ Այդ պայքարը հատկապես լայն թափ է ստացել վերջին ժամանակներս։ Այն ընդ-

գրկել է շատ երկրներ՝ Անգլիայից և Լիբիայից մինչև Ճապոնիա և Լատինական Ամերիկա։

Բայց անդրօվկիանոսյան «կատաղիները» չեն ունկնդրում ժողովուրդների ձայնը։ Մասնավորապես այդ մասին է վկայում այն փաստը, որ վերջին ժամանակներս պենտագոնը, հրթիռային ստացիոնար բազաները փոխելու պատրվակով, սկսել է ստեղծել «դյուրաշարժ ստորջրյա միջուկային բազաների» գլոբալ ցանց։ Յանկիներն այդպես են անվանում «պոլարիս» հրթիռներով զինված ատոմային սուզանավերը։ Ամերիկյան ստրատեգները մտադիր են դյուրաշարժ հրթիռամիջուկային ուժեր տեղաբաշխելու Եվրոպայի և Ասիայի ամբողջ պարագծի ուղղությամբ։ «Պոլարիս» հրթիռներով զինված ամերիկյան սուզանավեր են երևան եկել Միջերկրական ծովում։ ԱՄՆ-ը ակտիվորեն նախապատրաստվում է հրթիռակիր այդպիսի նավեր տեղաբաշխելու Խաղաղ և Հնդկական օվկիանոսներում։

Հարկ չկա ապացուցելու, որ ուրիշ երկրում կամ ուրիշի տերիտորիալ ջրերում գտնըվող հրթիռամիջուկային ամեն մի բազա իմպերիալիստների ռազմական մեքենայի ամենավտանգավոր մասն է։ Ուրիշ երկրնե-



րում օտարերկրյա բազաների առկայությունը միշտ եղել է միջազգային լարվածության աղբյուր, սպառնալիք է հանդիսացել խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար։ Իսկ հրթիռամիջուկային շարժական բազաների ստեղծումը ավելի է մեծացնում ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքը։ Ուստի արդի պայմաններում կարևորագույն խնդիր է այնպիսի միջոցների ձեռնարկումը, որոնք նպաստեին ագրեսիայի և պրովոկացիաների իմպերիալիստական օջախների շուտափույթ վերացմանը։ Հենց այդ նըպատակին են ուղղված Սովետական Միության ջանքերը։ Ինչպես հայտնի է, մեր կառավարությունը 18 պետությունների զինաթափման կոմիտեի քննությանն է հանձնել դեկլարացիայի նախագիծ, որով պահանջվում է իրականացնել խոհեմ քաղաքականություն։ Նախագծում ասված է, որ համապատասխան պետությունները պետք է պարտավորվեն օտարերկրյա նավահանգիստները չօգտագործել ատոմային հրթիռակիր սուզանավերի և հարվածային ավիակիրների բազավորման համար, ուրիշի տերիտորիաներում չտեղաբաշխել 1.500 կիլոմետր և ավելի հեռահարությամբ հրթիռ-

ներ, ատոմային զենք կրող ստրատեգիական ռմբակոծիչներ։

Համաշխարհային հասարակայնությունը սովետական առաջարկությունների մեջ տեսավ խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման կարևոր քայլ։ ՍՍՌՄ-ի խաղաղասիրական նախաձեռնությանը այլ վերաբերմունք ցույց տվեցին իմպերիալիստական տերությունների ագրեսիվ շրջանները։ Դատելով ըստ ամենի, նրանք, ոչ միայն հրաժարվում են վերացնել արդեն գոյություն ունեցող հրթիռային բազաները, այլև ստեղծում են նոր, ավելի վտանգավոր «դյուրաշարժ ստորջրյա միջուկային կետեր»։

Այդ ռազմամոլները չպետք է մոռանան, որ եթե իմպերիալիստները փորձեն ձեռք բարձրացնել Սովետական Միության և մյուս խաղաղասեր երկրների անվտանգության վրա, ապա հատուցման պատժիչ սուրը նրանց կհարվածի ամենուրեք, որտեղ էլ նրանք թաքնվեն՝ ցամաքում և օդում, ջրի վրա և ջրի տակ։

Վ. ՊՈԼՅԱՆՍԿԻ



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Պայքարի և հաղթանակների փառավոր ուղի

*(ՌՍԴԲՊ-ի II համագումարի 60-ամյակի առթիվ)*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ**— Լենինյան պարտիան կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն է, *ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1961։*

**Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ**— Եզրափակման խոսք ՍՄԿՊ XXII համագումարին, *Հայպետհրատ, 1961։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի պատմություն, *Հայպետհրատ, 1960։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը, *Հայպետհրատ, 1961։*

Սովետական Միության կոմունիստական պարտիայի կանոնադրությունը։

Վ. ՍՏԵՓԱՆՈՎ— Լենինի ստեղծածը, հոդված, տպագրված «Պրավդա»-ի 1963 թվականի ապրիլի 10-ի համարում, արտատպված «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 6-րդ համարում, էջ 28—40։

Վ. ՊՉՅՈԼԻՆ— Մասսաների հետ պարտիայի կապի ամրապնդումն ու զարգացումը, հոդված, տպագրված «Վոպրոսի իստորիի ԿՊՍՍ» ամսագրի 1963 թվականի 9-րդ համարում, արտատպված «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 6-րդ համարում, էջ 41—53։

## 2. Ամառվա ամիսները շինարարության վճռական ամիսներ են

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած ՌՍՖՍՌ-ի արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում, 1963 թվականի ապրիլի 24-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 26-ի և 27-ի համարներում։

Ավելի արագ տեմպ արդյունաբերական շինարարությանը, հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մայիսի 17-ի համարում։

Յոթնամյակի կարևորագույն կառույցներում, հոդվածներ և թղթակցություններ, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 8-ի համարում։



## 3. Արտադրանքի որակը ուշադրության կենտրոնում

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Տեխնիկական քաղաքականության ղեկավարման կենտրոնացումը և տնտեսական շինարարության կառավարման կատարելագործումը. ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1962։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած ՌՍՖՍՌ-ի արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում, 1963 թվականի ապրիլի 24-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի ապրիլի 26-ի և 27-ի համարներում։

Գործի դնել ներարտադրական ռեզերվները, հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 4-ի համարում։

## 4. Ցանքատարածությունների լավ խնամքը բարձր բերքի երաշխիքն է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ամրապնդել և բազմապատկել
գյուղատնտեսության զարգացման հաջողությունները:
Ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջմունք-
ները գյուղատնտեսական մթերքների ասպարեզում,

ՍՄԿՊ XXII համագումարին տված հաշվետու զեկուցումից, էջ 104—112, Հայպետհրատ, 1961։

Ժամանակի կորուստը բերքի կորուստ է, «Ս. Հ.»-ի 1963 թվականի մայիսի 12-ի առաջնորդող հոդվածը։

Աշակերտությունից է կախված բերքի բախտը, «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 9-ի առաջնորդող հոդվածը։

## 5. Մսամթերքների և կաթնամթերքների արտադրության վերելքի ապահովումը առաջնահերթ խնդիր է

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՌ կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների, սովխոզների բանվորների և բանվորուհիների, գյուղատնտեսության մասնագետների և բոլոր աշխատողների 1963 թվականի սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մարտի 7-ի համարում։*

Հանրային հոտն ապահովել կերի առատ պաշարով. *ՀԿՊ Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 12-ի համարում։*

Սիսիանի արտադրական վարչության կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մեխանիզատորների ու մասնագետների դիմումը ուղղված ռեսպուբլիկայի գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 12-ի համարում։*





## 6. ՍՍՌՄ ռազմա-ծովային նավատորմի օրը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ ռազմական նավատորմի համառուսաստանյան առաջին համագումարում 1917 թվականի նոյեմբերի 22-ին (դեկտեմբերի 5-ին), *Երկեր, հատոր 26, էջ 415—423, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ, արտասանած Սովետական Միության և Կուբայի ռեսպուբլիկայի ժողովուրդների բարեկամության միտինգում 1963 թվականի մայիսի 23-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մայիսի 24-ի համարում։*

Սովետա-կուբայական համատեղ հայտարարություն, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի մայիսի 25-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ պատասխանները իտալական «Պաեզե սերա» և «Օրա» թերթերի թղթակցի հարցերին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 8-ի համարում։*

*ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՏՈՒՆ*

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԸՆԳԻԲԱՐՅԱՆ

Ինդեքս՝ 77709

Отдел идеологической работы
ЦК КП Армении

# АГИТАТОРИ БЛОКНОТ

## № 12

1963

ՎՖ 08039 Պատվեր 515 Տիրաժ 8402

Հանձնված է արտադրության 13/VI 1963 թ.
Ստորագրված է տպագրության 20/VI 1963 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 8 կոպ.